## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78*

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78





Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 13
ՀՈՒԼԻՍ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


ՉԻՆԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ՍԽԱԼՆԵՐԻ ՄԱՍԻՆ, ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՀԱՄԱՌՈՐԵՆ ՊԱՇՏՊԱՆԵԼ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԳԻԾԸ, ՀԱՍՆԵԼ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՈՒԺԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ

*Մեր պարտիան կարող է լիովին կերպով ասել. մենք արել և անում ենք մեզանից կախված ամեն ինչ տարաձայնությունները հաղթահարելու, Չինաստանի կոմպարտիայի և ՍՄԿՊ-ի համագործակցությունը վերականգնելու, ՉԺՌ-ի ու Սովետական Միության բարեկամությունը, միջազգային կոմունիստական շարժման միասնությունն ամրապնդելու համար։*

*Չնայած Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների կողմից կիրառվող բանավեճի անթույլատրելի մեթոդներին, ՍՄԿՊ-ի և այլ եղբայրական պարտիաների դեմ նրանց բացահայտ պայքարին, մեր պարտիան առավելագույն զսպվածություն, առավելագույն պատասխանատվություն, առավելագույն հոգատարություն է ցուցաբերել կոմունիստական շարքերի համախմբվածության նկատմամբ։ Եթե ՍՄԿՊ-ի ու Չինաստանի կոմպարտիայի համախմբման, քաղաքական, տնտեսական, գիտատեխնիկական ու կուլտուրական բնագավառներում ՍՍՌՄ-ի և ՉԺՌ-ի համագործակցության ամրապնդման ու ընդլայնման նպատակով մեր պարտիայի ձեռնարկած բազմաթիվ գործնական քայլերն արդյունքներ չտվեցին, ապա այդ բանում ամբողջովին մեղավոր են չինական ղեկավարները։*

Ամեն անգամ, ի պատասխան մեր պարտիայի Կենտրոնական կոմիտեի կողմից բարի կամքի դրսևորման, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները դիտավորյալ կերպով ամեն ինչ արել են տարաձայնությունների հետագա սրման համար, նորանոր գրոհներ են ձեռնարկել ՍՄԿՊ-ի, սովետական կառավարության, համաշխարհային կոմունիստական շարժման ընդհանուր գծի դեմ։

ՍՄԿՊ-ի և նրա լենինյան կուրսի դեմ մղված պայքարում չինական ղեկավարները կրակն առաջին հերթին կենտրոնացնում են Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովի դեմ։ Նրանք, իհարկե, չեն կարող չտեսնել, որ հենց ընկեր Ն. Ս. Խրուշչովն է գլխավորում այն հիանալի պրոցեսները, որոնք մեր պարտիայի մեջ ու երկրում առաջացել են XX համագումարից հետո և ապահովում են սովետական ժողովրդի հաջող առաջընթացը դեպի կոմունիզմ։ Այդ է պատճառը, որ չինական ղեկավարները կկամենային իրենց քայքայիչ նպատակներով ընկեր Ն. Ս. Խրուշչովին անջատել Կենտրոնական կոմիտեից, Կենտկոմը հակադրել պարտիային և ամբողջ սովետական ժողովրդին։ Բայց այդ կեղտոտ մտադրությունն ավանտյուրիստական և անհուսալի է, այն մատնված է լիակատար ու խայտառակ ձախողման։ Չինական ղեկավարները, ասենք ոչ միայն նրանք, պետք է ընդմիշտ հիշեն, որ մեր Կենտրոնական կոմիտեն, հավատարիմ լենինյան Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովի գլխավորությամբ, միասնական և կուռ է, ինչպես երբեք։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովն իր անսպառ եռանդով, իսկական բոլշևիկյան կրքոտությամբ և խորաթափանցությամբ մեր պարտիայի ու ժողովրդի ճանաչված ղեկավարն է։ Նա արտահայտում է սովետական մարդկանց ամենասրբազան խոհերն ու իղձերը։ Մեր պարտիայի կողմից իրականացվող լենինյան գիծը չի կարելի բաժանել Կենտրոնական կոմիտեից, ընկեր Ն. Ս. Խրուշչովից։ Այդ գիծը չտեսնված բարձունքի է հասցրել մեր երկրի հեղինակությունը միջազգային ասպարեզում, բարձրացրել է նրա հեղինակությունն ամբողջ աշխարհի աշխատավորության աչքում։ Լենինյան գիծն անբաժանելիորեն պաշտպանում են սովետների երկրի բոլոր կոմունիստներն ու ամբողջ ժողովուրդը։ Սովետական ժողովրդի համախմբվածությունը պարտիայի,



նրա լենինյան Կենտկոմի շուրջն անխորտակելի է ժայռի պես, նրան զարնվելով կջախջախվեն բոլոր տեսակի չարամիտ հարձակումներն ու հերյուրանքները։

Մեր պարտիան երբեք չի վախեցել ու չի վախենում գաղափարական պայքարից։ Բայց նա ելնում է այն բանից, որ գաղափարական տարաձայնությունները պետք է լուծվեն լենինյան սկզբունքների հիման վրա, որ հենց բանավեճի զարգացումը հարկավոր է ենթարկել բանվորական շարժման շահերին։ ՍՄԿՊ Կենտկոմը պարզորոշ կերպով տեսել է բացահայտ բանավեճը վիճելի հարցերի պարզման միջոցից անմիտ, զրպարտչական մեղադրանքների առիթ, կոմունիստական շարժման դեմ պայքարի զենք դարձնելու չինական ղեկավարների փորձերի վտանգավորությունը։

Վերջին ժամանակներս չինական ղեկավարները նույնիսկ սկսեցին խոսել այն մասին, թե ՍՄԿՊ-ի հետ հարաբերությունները չեն բարելավի այլ կերպ, քան մեր պարտիայի կողմից «անառարկելի կապիտուլյացիայի» պայմանով։ Իսկ ի՞նչ են ցանկանում չինական ղեկավարները։ Ըստ էության խոսքն այն մասին է, որ միջազգային կոմունիստական շարժումը արդիականության կողմից առաջ քաշված բոլոր արմատական պրոբլեմներում նահանջի իր դիրքերից։

Ի հակակշիռ համաշխարհային կոմունիստական շարժման գլխավոր գծի, չինական ղեկավարները գործը տանում են դեպի արդիականության հիմնական ռևոլյուցիոն ուժերի պառակտում. Նրանք արհամարհում են ջերմամիջուկային պատերազմից մարդկությանը փրկելու խնդիրը, փաստորեն պաշտպանում են միջուկային սպառազինումների մրցավազքը, պայքարում են դրա մեջ նորանոր տերություններ ներգրավելու համար, իրականացնում են այնպիսի գիծ, որը կարող է հասցնել ատոմային պատերազմի. Նրանք խարխլում են սոցիալիստական լագերի միասնությունը, Չինաստանն ավելի ու ավելի են անջատում սոցիալիստական երկրներից, թերագնահատում տնտեսական շինարարությունը և արհամարհում կապիտալիզմի երկրների հետ տնտեսական մրցության մեջ սոցիալիստական երկրների խնդիրները. Նրանք ամեն կերպ վարկաբեկում են կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի և նրա կոմունիստական ավանգարդի պայքարը աշխատավորների կենսական շահերի, խաղաղության ու դե-

մոկրատիայի համար, մերժում են հակամոնոպոլիստական լայն դաշինքների տակտիկան, սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ իրականացման հնարավորությունը, պայքարում են ռևոլյուցիայի հարցերում աղանդավորության և պուտչիզմի համար, զենքը ձեռքին ավանտյուրիստական ելույթների համար՝ անկախ կոնկրետ իրադրությունից. Նրանք շրջանցում են ազգային-ազատագրական ռևոլյուցիայի արդի փուլի էությունը, չեն տեսնում առանձին երկրների դրության տարբերությունները, բոլոր երկրների ժողովուրդներին տալիս են մեկ դեղատոմս՝ զինված պայքար, փորձում են ազգային ազատագրական շարժումն անջատել սոցիալիստական համագործակցությունից և միջազգային բանվոր դասակարգից, որը միայն ձեռնտու է իմպերիալիստներին և գաղութարարներին. Նրանք վիժեցնում են կոմունիստական շարժման և դեմոկրատական կազմակերպությունների միասնությունը, ստեղծում են ֆրակցիաներ, ձգտում պառակտել մեր շարժումը և նրա ազգային ջոկատները։

Այսպիսով, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները կոմունիստական շարժման դեմ հանդես են գալիս նրա ստրատեգիայի ու տակտիկայի բոլոր հիմնական հարցերում։ Նրանց կուրսն այնպիսի կուրս է, որի մեջ միաձուլվում են մանրբուրժուական ռևոլյուցիոնությունը և նացիոնալիստական, մեծապետական ձգտումները։ Իրենց նացիոնալիստական ինքնասիրահարվածության մեջ նրանք պարծենում են, թե ուժեղացնելու են իրենց քայքայիչ գործունեությունն ընդդեմ միջազգային կոմունիստական շարժման, թե շարունակելու են հարձակումները ՍՄԿՊ-ի դեմ, որպեսզի կազմալուծեն մեծ Լենինի կողմից ստեղծված պարտիայի գործունեությունը։

Սովետական կոմունիստների՝ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի զավակների ու դուստրերի, նոր, կոմունիստական աշխարհի պիոներների համար, որոնց այնքա՜ն ծանր փորձություններ է բաժին ընկել, ուղղակի ծիծաղելի է այդպիսի սպառնալիքներ լսել։ Սովետական կոմունիստները չեն լռի, երբ չինական ղեկավարները սանձարձակ հարձակում են կատարում կոմունիզմի կառուցման մեր մեծ գործի, մեր պարտիայի լենինյան



կուրսի, միջազգային կոմունիստական շարժման դիրքերի վրա։

Այժմ ամբողջ սրությամբ ծառանում է մարքսիզմ-լենինիզմը չինական ղեկավարների խեղաթյուրումներից պաշտպանելու խնդիրը։ Մարքսիստական-լենինյան ուսմունքն անաղարտ պահելու շահերը, համաշխարհային կոմունիստական շարժման շահերը, վերջին հաշվով հենց չինական ժողովրդի շահերը մեզնից պահանջում են բացահայտորեն և վճռականապես հանդես գալ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների հակամարքսիստական, տրոցկիստական, նացիոնալիստական հայացքների և վտանգավոր գործողությունների դեմ։ ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշման մեջ, որն արտահայտում է բոլոր սովետական կոմունիստների միահամուռ կամքը, ասված է. «Մեր պարտիան ընթանում է և այսուհետև էլ ընթանալու է լենինյան ստուգված ուղիով, և ոչ ոք ու երբեք ՍՄԿՊ-ին չի կարող շեղել այդ կուրսից՝ XX և XXII համագումարների կուրսից»։

Չնայած չինական ղեկավարները շատ հեռու են գնացել իրենց պառակտողական գործողություններով, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը, ամենից բարձր դասելով համաշխարհային կոմունիստական շարժման միասնության շահերը, պատրաստակամություն հայտնեց այսուհետև ևս ջանքեր գործադրել ՍՄԿՊ-ի և Չինական կոմպարտիայի հարաբերությունները նորմալացնելու համար։ Եթե Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները վերջնականապես չեն կորցրել իրենց ինտերնացիոնալ պատասխանատվության զգացումը, նրանք պետք է, վերջապես, հասկանան որ իրենց գործողություններով կոմունիստական ու բանվորական պարտիաների ուժերը և ուշադրությունը շեղում են սոցիալիստական շինարարության կենսական խնդիրների լուծումից, դժվարացնում են պայքարն իմպերիալիզմի դեմ, վնաս են հասցնում հակաիմպերիալիստական ամբողջ ճակատին։

Հավատարիմ լինելով մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին, մեր պարտիան այսուհետև ևս պատրաստ է ուղիներ որոնելու ստեղծված դժվարությունների հաղթահարման, ՍՄԿՊ-ի ու մյուս եղբայրական պարտիաների հետ չինական ղեկավարների տարաձայնություն-

ների վերացման համար։ Սովետական կոմունիստներն անկեղծ համակրանք են տածում չին մեծ ժողովրդի նկատմամբ, խորապես հարգում են Չինաստանի կոմունիստական պարտիայի ռևոլյուցիոն տրադիցիաները։ Մենք վստահ ենք, որ ոչ ոքի ու երբեք չի հաջողվի խարխլել Սովետական Միության ու Չինաստանի մեծ ժողովուրդների բարեկամության հիմքերը, որ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության այժմյան դիրքերը չեն արտացոլում չին ժողովրդի իսկական ազգային շահերը։

Սովետական կոմունիստներն իրենց լրիվ հաշիվ են տալիս, թե իրենից ինչ վտանգ է ներկայացնում չինական պարագլուխների այժմյան դիրքը։ Փաստերը ցույց են տալիս, որ լուրջ և, դատելով ըստ ամենի, երկարատև պայքար պետք `է մղվի բոլոր սոցիալիստական ուժերի միասնության ամրապնդման, սովետական ու չինական ժողովուրդների բարեկամության ու համագործակցության համար։ Այժմ միանգամայն պարզ է, որ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները մտադիր են այսուհետև ևս համառել իրենց սխալ գծի պաշտպանման մեջ, այսուհետև ևս ծավալել իրենց ֆրակցիոն գործունեությունը համաշխարհային կոմունիստական շարժման մեջ։ Մեր պարտիան եղբայրական մյուս պարտիաների հետ միասին այսուհետև էլ վճռականապես կպաշտպանի մարքսիզմ-լենինիզմը, կոմունիստական շարժման միասնությունն ու համախմբվածությունը դեկլարացիայի և հայտարարության սկզբունքներով, բոլոր այն ուժերի միասնությունն ու համախմբվածությունը, որոնք հանդես են գալիս հանուն խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության ու սոցիալիզմի։

ՍՄԿՊ-ն հանդես է գալիս եղբայրական պարտիաների հերթական խորհրդակցություն հրավիրելու օգտին, որպեսզի քննարկվեն արդիականության արմատական հարցերը, այն բանի օգտին, որ այդպիսի խորհրդակցությունում, կոմունիստական շարժման դժվարությունները հաղթահարելու շահերից ելնելով, կատարվի կարծիքների ամենալայն փոխանակություն։ Այդ դժվարությունները ծագել են միջազգային կոմունիստական շարժման հետ Չինաստանի կոմպարտիայի



ղեկավարության տարաձայնությունների պատճառով։ Ուստի միանգամայն օրինաչափ են բոլոր եղբայրական պարտիաների կոլեկտիվ ջանքերը կոմունիստական շարքերի մարքսիստական-լենինյան միասնության պահպանման և ամրապնդման անհրաժեշտ ուղիների ու միջոցների որոշման գործում։ ՍՄԿՊ-ի համար միանգամայն պարզ է, որ խորհրդակցությունը պետք է ծառայի հենց այդ նպատակին։

ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշման մեջ արտահայտված է հսկայական պատմական ուղի անցած և բազմահարուստ փորձ ունեցող մեր լենինյան պարտիայի համոզմունքը, որ համաշխարհային կոմունիստական շարժումը կհաղթահարի գոյություն ունեցող դժվարությունները, իր շարքերն ավելի սերտորեն կհամախմբի Մարքսի— Էնգելսի—Լենինի դրոշի ներքո, նոր հաջողություններ ձեռք կբերի ջանվոր դասակարգի մեծ գործի, խաղաղության ու ժողովուրդների անվտանգության, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։

Այն ուղին, որով ընթանում են մեր պարտիան, միջազգային կոմունիստական շարժումը, լենինյան, ուստի և միակ ճիշտ ուղին է։ Վերջին ժամանակներս տեղի ունեցան միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմների, պարտիայի երկրկոմների ու մարզկոմների ընդլայնված պլենումներ, ինչպես նաև խոշորագույն մարզային ու քաղաքային կազմակերպությունների պարտիական ակտիվի ժողովներ, որոնք քննարկեցին «Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿՊ-ի պայքարի մասին» ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի փաստաթղթերը։ Պլենումները և ակտիվի ժողովները հավանություն տվեցին այդ փաստաթղթերին, նոր ուժով ցուցադրեցին Կենտրոնական կոմիտեի և ընկեր Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ նրա նախագահության շուրջը մեր պարտիայի բոլոր ջոկատների կուռ համախմբվածությունն ու միասնությունը։ Մեր ամբողջ պարտիան միահամուռ կերպով հավանություն է տալիս ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումներին։ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումներում ամբողջ սովետա-

կան ժողովուրդը տեսնում է մարքսիզմ—լենինիզմին և պրոլետարական ինտերնացիոնալիզմին մեր պարտիայի անսասան հավատարմության, նրա քաղաքական իմաստունության, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շահերի պաշտպանության գործում, նրա կայունության նոր դրսևորումը։

Սովետական Միության կոմունիստական պարտիան մեծ Լենինի անպարտելի դրոշի ներքո այսուհետև ևս անշեղորեն ու հետևողականորեն կիրականացնի այն գիծը, որի նպատակն է կատարել ՍՄԿՊ ծրագիրը, մեր երկրում կառուցել ամենաարդարացի հասարակարգը՝ կոմունիզմը, պատվով կկատարի իր ինտերնացիոնալ պարտքը կոմունիստական շարժման, ամբողջ աշխարհի աշխատավորների հանդեպ։

Տպագրվում է ՍՄԿՊ Կենտկոմի
«Կոմունիստ» ամսագրի 1964 թ.
5-րդ համարից

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ՕՐԻՆԱԿԵԼԻ ԱԳԻՏԿԵՏԸ

Երևանի Ղուկաս Ղուկասյանի անվան պիոներների և դպրոցականների պալատի սկզբնական պարտիական կազմակերպությանը կից մշտապես գործող ագիտկետը իրավամբ դարձել է բնակչության շրջանում տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի լավագույն օջախներից մեկը։ Արդեն 10 տարի է, ինչ գործում է այդ ագիտկետը, որի կոլեկտիվը կուտակել է դրական աշխատանքի հարուստ և ուսանելի փորձ։

Ագիտկոլեկտիվում ընդգրկված են ագիտատորի բարդ և պատվավոր գործը սիրող, ձեռներեց մարդիկ, որոնք բարեխղճորեն ագիտացիոն աշխատանք են կատարում մայրաքաղաքի Մոսկովյան, Նալբանդյան, Պարոնյան և Աբովյան փողոցներն ընդգրկող բնակելի շենքերում։

Թաղամասի բնակիչները գովեստով են խոսում ագիտատորներ Գ. Հովումյանի, Վ. Երզնկյանի, Ա. Իսագուլյանի, Լ. Խաչատրյանի, Ռ. Մկրտչյանի, Օ. Օրդյանի,



Ս. Կարապետյանի և ուրիշների մասին։ Նրանք ագիտացիոն աշխատանք կատարելուց բացի հետաքրքրվում են նաև բնակչությանը հուզող հարցերով և պարտիական ու սովետական օրգանների միջոցով ընթացք տալիս և լուծում նրանց պահանջներն ու ցանկությունները։ Օրինակ, Նալբանդյան փողոցի № 79 տան բնակիչները ագիտատոր Ս. Կարապետյանին խնդրեցին դասախոսություն կազմակերպել Երևան քաղաքի զարգացման հեռանկարների մասին։ Դասախոսությամբ հանդես եկավ քաղսովետի պլանային հանձնաժողովի նախագահ Գ. Փանոսյանը։ Դասախոսությունից հետո տան բնակիչները մի քանի օր աշխատեցին և բակը բարեկարգեցին։ Ագիտատորի գլխավորած այդ աշխատանքը ոչ միայն լավ արդյունքներ տվեց, այլև վարակիչ օրինակ հանդիսացավ բազմաթիվ այլ տների բնակիչների համար։

Բարեկարգման աշխատանքներ նախաձեռնեցին Պարոնյան նրբանցքի, Մոսկովյան փողոցի մի շարք տների բնակիչները։ Այժմ արդեն տրադիցիա է դարձել ամեն տարի գարնանը և աշնանը մաքրել շենքերի բակերը, կանաչապատել ու ծառապատել դրանք։

Ագիտատորները զգալի գործ են կատարում նաև բնակչությանը համաքաղաքային շաբաթօրյակներին ակտիվորեն մասնակից դարձնելու ուղղությամբ։ Օրինակ, համաքաղաքային վերջին շաբաթօրյակին, որ տեղի ունեցավ ապրիլի 5-ին, մասնակցեցին թաղամասի գրեթե բոլոր բնակիչները։ Նրանք փխրեցրին ծառաբները, բարելավեցին շրջապատի սանիտարական վիճակը, բարեկարգեցին թաղամասի առանձին հատվածները։

Պարտիական կազմակերպությունը, նրա քարտուղար Ս. Մարտիրոսյանը մեծ ուշադրություն են դարձնում ցուցադրական ագիտացիային։ Այստեղ սիստեմատիկաբար կազմակերպվում են ցուցահանդեսներ, ֆոտոստենդներ, հաճախակի փոփոխվում ու թարմացվում են պլակատները, դիագրամները և ցուցադրական մյուս նյութերը։

«Հայրենիքի բարգավաճման համար»— այսպես է կոչվում ագիտկետում վերջերս բացված ֆոտոստենդը, որը ակնառու կերպով արտացոլում է մեր հայրենիքի այսօրն ու մոտալուտ ապագան։

Ցուցափեղկում փակցված են արտադրության մի շարք առաջավորների դիմանկարներ, որոնց թվում են ՍՍՌՄ Գերագույն սովետի դեպուտատներ, էլեկտրա-

ճշգրիտչափիչ սարքերի գործարանի բանվորուհի Զ. Մանուկյանը և ռեսպուբլիկայի անվանի ճակնդեղագործուհի Ս. Սարգսյանը։

Թաղամասի բնակիչներն ակտիվորեն մասնակցում են ցուցադրական ագիտացիայի նյութերի հավաքման ու ձևավորման գործին։ Ագիտկոլեկտիվի ղեկավար Ռ. Ասմարյանի ղեկավարությամբ տնային տնտեսուհիներ Ք. Յոլչյանը, Մ. Կարապետյանը, Ս. Ամիրյանը կազմակերպեցին «Մեծ քիմիայի հաղթարշավը» ֆոտոստենդը, որը ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի նյութերի լույսի տակ արտացոլում է մեր երկրում և ռեսպուբլիկայում քիմիական արդյունաբերության զարգացման մեծ հեռանկարները։

Ագիտկետը ունի կինոսարք և բնակչության համար պարբերաբար ցուցադրում է կարճամետրաժ ու դոկումենտալ ֆիլմեր։ Այստեղ օրվա բոլոր ժամերին բնակիչները կարող են կարդալ ցանկացած ամսագիրը, բրոշյուրը, օրվա թարմ թերթերը։ Ագիտկետում տրադիցիա են դարձել բնակչության համար կազմակերպվող հարց ու պատասխանի երեկոները, բանավոր ամսագրերը, հանդիպումները արտադրության առաջավորների, հին բոլշևիկների, սովետական բանակի վետերանների, գիտության ու կուլտուրայի անվանի գործիչների հետ։ Լենինյան օրերին ագիտկոլեկտիվը կազմակերպեց Թաղամասի բնակչության հետ պարտիայի հնագույն անդամ Հմայակ Բեգլուևի հանդիպումը, որը հետաքրքիր հիշողություններ պատմեց Լենինի հետ ունեցած իր հանդիպումների, Կրեմլի պահակախմբի աշխատանքի, մի շարք ռևոլյուցիոն ելույթների և հետաքրքիր այլ էպիզոդների մասին։

Թաղամասի բնակչությունը երկար կհիշի այն հետաքրքիր ու ջերմ հանդիպումները, որ տեղի ունեցան ժողովրդական նկարիչ, Լենինյան մրցանակի լաուրեատ Մարտիրոս Սարյանի, հանրահռչակ կոմպոզիտոր Արամ Խաչատրյանի, գեներալ-լեյտենանտ Սարգիս Մարտիրոսյանի և այլ նշանավոր մարդկանց հետ։

Բացի այդ կիրառվում են նաև կուլտուրական հանգստի այնպիսի ձևեր, ինչպիսիք են էքսկուրսիաները, կոլեկտիվ կինոհաճախումները, համերգներ ունկնդրելը և այլն։

Օրերս ագիտատորներ Կարապետյանի, Ասմարյանի և Իսագուլյանի ուղեկցությամբ Թաղամասի շուրջ 100



բնակիչներ եղան Երևանի սարքաշինական գործարանում, ծանոթացան արտադրության կազմակերպմանը, հանդիպեցին ձեռնարկության առաջավոր բանվորներ՝ խառատ Ա. Մերենկովի, ֆրեզերագործ Ա. Համբարձումյանի, փաթաթող բանվորուհի Ա. Շիրվանյանի հետ։ Վերջիններս բնակիչներին պատմեցին իրենց փորձի, նորարարական ու ռացիոնալիզատորական առաջարկների մասին։ Այդ բացառիկ ջերմ հանդիպումը ավարտվեց ձեռնարկության աշխատողների և հյուրերի համատեղ համերգով։

Ագիտկետում պարտիական ու սովետական ղեկավար աշխատողների, գիտության ու կուլտուրայի անվանի մարդկանց ուժերով բնակչության համար հաճախ կազմակերպվում են դասախոսություններ ու զեկուցումներ միջազգային դրության, գիտության և կրոնի, երեխաների դաստիարակության և այլ հետաքրքիր հարցերի շուրջը։

Յուրաքանչյուր այդպիսի միջոցառման մասնակցում են 500—600 ունկնդիրներ։ Հատկապես հետաքրքիր անցան օրգանական քիմիայի ինստիտուտի ավագ գիտաշխատող, քիմիական գիտությունների թեկնածու Գ. Մարտիրոսյանի՝ «Քիմիան այսօր», մանկավարժական գիտությունների թեկնածու Տ. Վարդումյանի՝ «Երեխաների կոմունիստական դաստիարակության մի քանի հարցերը», պարտիայի Սպանդարյանի շրջկոմի հրահանգիչ Կ. Վարդանյանի՝ «Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿՊ պայքարի մասին» զեկուցումներն ու դասախոսությունները։ Որպես կանոն այդ դասախոսություններից հետո ցուցադրվում է կինոնկար, ելույթ են ունենում գեղարվեստական ինքնագործունեության խմբակները։

Ագիտկոլեկտիվը պարտիական կազմակերպության ղեկավարությամբ շարունակ որոնում և գտնում է ագիտացիոն-մասսայական աշխատանքի նոր, ավելի գործուն ու արդյունավետ ձևեր և մեթոդներ, կատարելագործում եղածը։ Ահա թե ինչու Երևանի պիոներների և դպրոցականների պալատի ագիտկոլեկտիվը վայելում է բնակչության սերն ու հարգանքը, իսկ նրա աշխատանքըն արժանանում գովեստի։

Վ. ՍԵՎՅԱՆ

# ՄԵՏԱԼՈՒՐԳԻ ՕՐԸ

## (Թվեր և փաստեր)

Ամեն տարի հուլիսի երրորդ կիրակի օրը սովետական ժողովուրդը նշում է մետալուրգի օրը:

Մետալուրգի օրը այն մարդկանց տոնն է, որոնք անձնվիրաբար աշխատում են հանքերում ու հարստացուցիչ ֆաբրիկաներում, դոմնային ու մարտենյան վառարանների մոտ: Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական մետալուրգները մեր երկիրը մետաղի արտադրությամբ դուրս բերեցին առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ տեղը աշխարհում: 1980 թվականին մեր երկրում պողպատի ձուլումը հասցնել 250 միլիոն տոննայի— սա ՍՄԿՊ ծրագրի առաջադրանքը: Այժմ սովետական մետալուրգները ոչ մի ջանք չեն խնայում պատվով կենսագործելու այդ առաջադրանքը: Նրանք իրենց ամբողջ ջանքերը ուղղել են այն բանին, որպեսզի շեշտակիորեն ավելացվի մետաղի հանույթը, պողպատի, չուգունի ձուլումը, արտադրության մեջ արմատավորվի նոր տեխնիկա ու տեխնոլոգիա, բարելավվի արտադրանքի որակը:

Մեր մետալուրգներն իրենց ամենօրյա աշխատանքային մեծ նվաճումներով սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին լուծում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հոյակապ խնդիրները:

✪ *1913 թվականին Ռուսաստանը սև մետաղների արտադրությամբ աշխարհում բռնում էր հինգերորդ տեղը, իսկ նրա տեսակարար կշիռը պողպատի համաշխարհային արտադրության մեջ կազմում էր 5 տոկոսից քիչ ավելի:*

✪ *1913 թվականին ձուլվել է ընդամենը 4,2 միլիոն տոննա չուգուն և այդքան էլ պողպատ: 1920 թվականին չուգունի ձուլումը կազմում էր մինչպատերազմյան մակարդակի 2,7 տոկոսը:*

✪ *1923 թվականին Սովետական Միությունն արտադրել է ընդամենը 615 հազար տոննա պողպատ: Մենք այդ բնագավառում ԱՄՆ-ից ետ էինք 74 անգամ: Անցած տարիներին ՍՍՌՄ-ում պողպատի արտադրությունն ավելացել է 115 անգամ:*



✪ *1960 թվականին ՍՍՌՄ-ում ձուլվել է 65 միլիոն տոննա պողպատ, իսկ ԱՄՆ-ում՝ 90 միլիոն տոննա: 1970 թվականին ՍՍՌՄ-ում արդեն կձուլվի այնքան պողպատ, որը 55 միլիոն տոննայով կգերազանցի ԱՄՆ-ի այժմյան մակարդակը:*

✪ *1963 թվականին ՍՍՌՄ-ում չուգունի ձուլումը կազմեց 58,7 միլիոն տոննա, պողպատինը՝ 80,2 միլիոն տոննա:*

✪ *Անցած հինգ տարում յոթնամյա պլանից ավելի երկիրը ստացել է 14 միլիոն տոննա պողպատ և 14 միլիոն տոննա գլանվածք:*

✪ *Վերջին տասը տարում ՍՍՌՄ-ում պողպատի ձուլումը ավելացել է 77 տոկոսով, իսկ ԱՄՆ-ում այն կրճատվել է 18 տոկոսով:*

✪ *1963 թվականին ՍՍՌՄ-ում պողպատի ձուլումը կազմեց ԱՄՆ-ում ձուլված պողպատի 80 տոկոսը, որը 1957 թվականին կազմում էր 49 տոկոս, 1953 թվականին՝ 37 տոկոս:*

✪ *ԱՄՆ-ում 1972—1975 թվականներին պողպատի ձուլումը կհասնի մոտավորապես 147 միլիոն տոննայի, որը բնակչության յուրաքանչյուր շնչի համար կկազմի 754 կիլոգրամ: 1980 թվականին ՍՍՌՄ-ում բնակչության յուրաքանչյուր շնչի համար կարտադրվի 900 կիլոգրամ պողպատ:*

✪ *1980 թվականին ՍՍՌՄ-ում պողպատի ձուլումը կհասնի 250 միլիոն տոննայի, իսկ 1960 թվականին չորս խոշոր կապիտալիստական երկրներ (ԱՄՆ, Անգլիա, Ֆրանսիա, ԳՖՌ) միասին ձուլեցին մոտավորապես 168 միլիոն տոննա:*

✪ *Այժմ ՍՍՌՄ-ը երկաթահանքի արդյունահանության և կոքսի արտադրության գծով աշխարհում գրավում է առաջին տեղը:*

✪ *Յոթնամյակի մնացած հինգ տարիներին մեր երկրում կառուցվել են տասնյակ դոմենյան և մարտենյան վառարաններ:*

✪ *Մինչև յոթնամյակի վերջը տեխնիկապես կվերակառուցվեն բոլոր այն մետալուրգիական ձեռնարկությունները, որոնք կառուցվել են վերջին 25 տարում:*

✪ *Եթե մինչև պատերազմը դոմենյան վառարանները կառուցվում էին 1300 խորանարդ մետր ծավալով, ապա այժմ՝ 2000 և ավելի խորանարդ մետրով։ Մարտենյան վառարանների տարեկան տարողունակությունը 350-ից հասել է 600—800 տոննայի, էլեկտրավառարաններինը՝ 30-ից մինչև 80—100 տոննայի։*

✪ *Աշխատանքային սխրանքներ է կատարում «Ջապորոժստալ» գործարանի կոլեկտիվը, որը պողպատի ձուլման յոթնամյա պլանը կատարել է 1962 թվականին, իսկ չուգունի ձուլման պլանը՝ 1963 թվականին։*

✪ *Կուրսկի մագնիտային անոմալիի հանքային պաշարները, որոնք ձգվում են 200 կիլոմետր երկարությամբ և 800 կիլոմետր լայնությամբ, այնքան մեծ են, որ եթե որևէ վայրում գտնվի այդ պաշարների մեկ հիսուներորդ մասը, ապա այդպիսին կհամարվի շատ հարուստ հանքավայր։*

✪ *Սև և գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում աշխատողների շուրջ 70 տոկոսը մրցում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի ու հարվածայինի կոչմանը արժանանալու համար։*

✪ *Բուռն թափով զարգանում է Սովետական Հայաստանի գունավոր մետալուրգիան։ Այժմ բնակչության մեկ շնչին ընկնող գունավոր մետալուրգիայի արտադրանքով Սովետական Հայաստանը առաջ է անցել կապիտալիստական շատ երկրներից։*

✪ *Այժմ Սովետական Հայաստանը դարձել է ՍՍՌՄ-ում մոլիբդենի խոշոր առաքիչ։*

✪ *Մեր ռեսպուբլիկայում հաջողությամբ զարգանում է ալյումինի արդյունաբերությունը։ Աչքի ընկնող դեր է խաղում Երևանի ալյումինի գործարանը, որը երկրին տալիս է ալյումին, ալյումինե վայերբարսներ, փոլգա, ալյումինի թերթեր և այլն։*

✪ *Վերակառուցվում ու ընդլայնվում է Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատը, որը յոթնամյակի վերջում լրիվ կարողությամբ կթողարկի մետալուրգիական և քիմիական բազմատեսակ արտադրանք, այդ թվում հազվագյուտ և թանկարժեք մետաղներ։*

---



# ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԼԵՀԱՍՏԱՆԸ

## (Թվեր և փաստեր)

20 տարի առաջ սովետական բանակի զորամասերը սկսեցին Լեհաստանի ազատագրումը հիտլերյան զավթիչներից։ Թոթափելով օտար և լեհ շահագործողների ծանր լուծը, լեհ ժողովուրդը ձեռնամուխ եղավ սոցիալիստական հիմունքներով նոր կյանքի կառուցմանը։ Պատրաստվելով այս օրերին նշելու լեհական պետության հիմնադրման հազարամյակը, լեհ ժողովուրդը պարզ կերպով գիտակցում է, որ ժողովրդական տնտեսության, կուլտուրայի և գիտության զարգացման, ինչպես նաև պետական անկախության ամրապնդման ասպարեզում վերջին քսանամյակում ձեռք են բերվել ավելի մեծ հաջողություններ, քան նախորդ ամբողջ հազարամյակում։

☐ *Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի տերիտորիան կազմում է 312 հազար 520 քառակուսի կիլոմետր, իսկ բնակչությունը՝ մոտ 31 միլիոն մարդ։*

☐ *Լեհական միացյալ բանվորական պարտիայի շարքերում հաշվվում են մոտ մեկ միլիոն 475 հազար անդամ և թեկնածու։*

☐ *Լեհաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1963 թվականին, 1938 թվականի համեմատությամբ, ավելացել է 9 անգամ, իսկ 1958 թվականի համեմատությամբ՝ 53 տոկոսով։*

☐ *Անցած քսան տարիների ընթացքում ժողովրդական Լեհաստանի ազգային եկամուտը եռապատկվել է։*

☐ *1958 թվականից մինչև 1963 թվականը երկրի ազգային եկամուտը ավելացել է մոտ 30 տոկոսով։*

☐ *Կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալն այդ նույն ժամանակաշրջանում աճել է 53,4 տոկոսով։*

☐ *Արդյունաբերության մեջ աշխատող բանվորների ու ծառայողների թիվը ավելացել է չորս անգամ, իսկ ինժեներներինը՝ ութ անգամ։*

☐ *1963 թվականին Լեհաստանում արդյունահանվել է մոտ 113 միլիոն տոննա քարածուխ, ձուլվել է մոտ 8 միլիոն տոննա պողպատ, կառուցվել 278 հազար տոննա ջրատարողությամբ ծովային նավեր, արտադրվել է 7,6 միլիոն տոննա ցեմենտ և մոտ 900 հազար տոննա ծծմբաթթու։*

□ 1963 թվականին Լեհաստանում արտադրվել է 37
միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որը 1938
թվականի համեմատությամբ ավել է 9 անգամ։

□ 1938 թվականի համեմատությամբ 19 անգամ ա-
ճել է Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի քիմիա-
կան արդյունաբերության համախառն արտադրանքը։

□ Միայն վերջին երեք տարում Լեհաստանում շարք
է մտել մոտ 40 խոշոր արդյունաբերական ձեռնարկու-
թյուն և կոմբինատ. գործարաններում ու ֆաբրիկանե-
րում կառուցվել է մոտ 300 նոր ցեխ։

□ Բուռն զարգացում է ապրում մեքենաշինությունը,
որի արտադրանքն այժմ 30 անգամով գերազանցում է
մինչպատերազմյան մակարդակը։

□ Սովետական մասնագետների տեխնիկական օգնու-
թյամբ Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայում կա-
ռուցվել են հարյուրավոր խոշոր արդյունաբերական
ձեռնարկություններ։

□ Այդ ձեռնարկություններից շատ շատերը մեծ մա-
սամբ սարքավորված են սովետական դազգահներով,
մեքենաներով ու ապարատներով։

□ Լեհական գյուղատնտեսական արտադրության մի-
ջին մակարդակը 1960—1963 թվականների ընթացքում,
նախորդ չորս տարիների համեմատությամբ, աճել է
13,5 տոկոսով։ Պետական տնտեսություններում, պետա-
կան մեքենա-տրակտորային կայաններում, արտադրա-
կան կոոպերատիվներում և գյուղատնտեսական խմբակ-
ներում գոյություն ունեցող տրակտորային պարկը աճել
է 40 հազար մեքենայով։

□ Եթե 1960 թվականին Լեհաստանում ցանքատա-
րածությունների յուրաքանչյուր հեկտարին տրվում էր
49 կիլոգրամ արհեստական պարարտանյութ, ապա
1963 թվականին տրվել է 60 կիլոգրամ։

□ Վերջին երեք տարում Լեհաստանի քաղաքներում
շահագործման է հանձնվել ավելի քան մեկ միլիոն բը-
նակարան, կառուցվել է 1684 տարրական դպրոց։

□ 1950—1963 թվականների ընթացքում երկրում
կառուցվել է 4.276 հազար բնակելի սենյակ։

□ 1958—1963 թվականներին աշխատավորների
ռեալ եկամուտներն ավելացել են մոտավորապես 9 տո-
կոսով։

□ Հազարավոր կոլեկտիվներ մրցություն են ծավա-
լել սոցիալիստական աշխատանքի բրիգադի բարձր կոչ-





ման արժանանալու համար։ Միայն 1963 թվականին
այդ կոչմանն են արժանացել հանքափորների, շինա-
րարների և մետաղագործների 2.600 բրիգադ։

□ Լեհաստանի բարձրագույն ուսումնական հաստա-
տություններում սովորողների թիվը, նախապատերազմ-
յան ժամանակաշրջանի 50 հազար մարդու համեմատու-
թյամբ, ներկայումս աճել և հասել է 173 հազարի։

□ Եթե 1937—1938 թվականներին բուրժուական Լե-
հաստանում 7-ից մինչև 14 տարեկան հասակի մեկ մի-
լիոն երեխաներ զրկված էին դպրոց հաճախելու հնա-
րավորությունից, ապա այժմ ժողովրդական Լեհաստա-
նում դպրոցահասակ բոլոր երեխաները սովորում են։

□ Մեկ տարվա ընթացքում Լեհաստանի կինոթատ-
րոններն են հաճախել մոտ 180 միլիոն, իսկ թատրոն-
ները՝ 12 միլիոն հանդիսատես։

□ Լեհաստանի միացյալ բանվորական պարտիայի
վերջերս իր աշխատանքներն ավարտած չորրորդ համա-
գումարը ընդունեց Լեհական Ժողովրդական Ռեսպուբլի-
կայի զարգացման 1966—1970 թթ. հնգամյա պլանը,
որի իրագործումը նոր, է՛լ ավելի փայլուն հեռանկարներ
է բացում երկրի ժողովրդական տնտեսության և կուլ-
տուրայի զարգացման համար։ Այդ պլանով նախատես-
ված է 1965 թվականին ձեռք բերվելիք մակարդակի
համեմատությամբ արդյունաբերական արտադրության
աճը 1970 թվականին հասցնել 45—47 տոկոսի, իսկ
գյուղատնտեսական արտադրության աճը՝ 14—15 տո-
կոսի։

□ Նշված հնգամյակում կապիտալ ներդրումների
գծով կատարվելիք ծախսերը կկազմեն 830—840 մի-
լիարդ զլոտի, իսկ արդյունաբերական արտադրանքը,
նախորդ հնգամյակի համեմատությամբ, կաճի ավելի
քան մեկ և կես անգամ։

□ Գալիք հնգամյակում է՛լ ավելի լայն ծավալ կըս-
տանա ժողովրդի կուլտուր-կենցաղային կարիքների
բավարարման համար նախատեսված շինարարությունը
և հատկապես բնակարանային շինարարությունը։ Բա-
վական է նշել, որ եթե ընթացիկ, 1964 թվականին
Վարշավայի բնակիչները ստանալու են մոտ 30 հազար
բնակարան, ապա մինչև 1970 թվականը նրանք կստա-
նան ևս 200 հազար բնակարան։ Մայրաքաղաքում հիմ-
նըվելու են 12 նոր բնակելի շրջաններ։

# ՄԻԱՅՆ ՓԱՍՏԵՐ

Ամերիկյան մոնոպոլիստները երկրորդ համաշխարհային պատերազմից շահեցին 55,2 միլիարդ դոլար մաքուր շահույթ, այսինքն՝ 35,7 միլիարդ դոլարով ավելի, քան նրանք շահույթ էին ստացել նախապատերազմյան 6 տարիների ընթացքում։

Այս տարվա փետրվարի 19-ին ԱՄՆ-ի հռչակավոր Չիկագո քաղաքում տեղի ունեցավ սովյալների արշավ։ «Մենք աշխատանք ենք ուզում», «Մենք ուտել ենք ուզում» լոզունգներով հարյուրավոր գործազուրկներ և նրանց ընտանիքի անդամներ անցնում են Չիկագոյի մունիցիպալ վարչության շենքի առջևով։ Դա սովյալների երկրորդ արշավն էր Չիկագոյում։ Առաջին արշավը տեղի է ունեցել հունվարին։ Արշավի ղեկավար, հոգևորական Հենրի Միտչելը ասել է, որ ցույցը կշարունակվի այնքան ժամանակ, քանի դեռ նահանգի իշխանությունները սովյալ գործազուրկներին չեն բավարարել սննդամթերքներով։

Հոլանդիայի ֆինանսների մինիստրության տվյալներով աճում են հարկերը։ 1963 թվականին երկրում հավաքվել է 11.513 միլիոն գուլդեն հարկ, որը 6 տոկոսով գերազանցում է 1962 թվականին հավաքված հարկերի ընդհանուր գումարը։

Ամերիկայի Տեխաս նահանգի կոլեջներից մեկի ղեկավարները 16-ից մինչև 18 տարեկան բոլոր աղջիկներին բաժանել են հարցաթերթիկ, որտեղ այլ հարցերի թվում եղել է նաև այսպիսին. «Ի՞նչ կուզենայիր դառնալ»։ Եվ ամերիկուհիների գերակշռող մասը պատասխանել է՝ «պրեզիդենտի կին», «սենատորի կին», «միլիոնատիրուհի» և այլն։



ԱՄՆ-ի պրեզիդենտ Լ. Ջոնսոնի պաշտոնական հաղորդագրությամբ (1964 թվականի հունվարի 20-ի ուղերձը կոնգրեսին) ամերիկյան կորպորացիաների շահույթները վերջին երեք տարում ավելացել են 44 տոկոսով։ Նույն ժամանակամիջոցում, հայտնում է պրեզիդենտը, երկրի արտադրողական կարողությունների 13 տոկոսը չի օգտագործվում, ԱՄՆ-ում կա 4 միլիոն գործազուրկ։

ԱՄՆ-ի պրեզիդենտի խոստովանությամբ ներկայումս 33—35 միլիոն ամերիկացիներ ապրում են աղքատության մեջ։

Լատինական Ամերիկայում մշակվող հողային տարածության 90 տոկոսը պատկանում է հողատերերին (լատիֆունդիստներին), որոնք կազմում են բնակչության միայն 10 տոկոսը։

Հափշտակելով արտադրության հիմնական միջոցները, արևմտագերմանական մոնոպոլիստները մեծ հարստություններ են կուտակում ժողովրդի հաշվին։

Միայն 1958—1961 թվականներին արևմտագերմանական 49 արդյունաբերական ակցիոներական ընկերությունների մաքուր շահույթը ավելացել է երկու անգամ։

ԳՖՌ-ում հրատարակվող «Հևերկշաֆտլիխե» ամսագրի տվյալներով Արևմտյան Գերմանիայի բնակչությունը գրեթե սեփականազրկված է։ Ազգային հարստության 85 տոկոսը սեփականացրել են կապիտալիստներն ու մոնոպոլիստները։

Լոնդոնի էկոնոմիկայի դպրոցի պրոֆեսոր Ռիչարդ Տիտմուսը իր «Անպատասխանատու հասարակություն» խորագրով գրքում գրում է, որ ներկայումս 7—8 միլիոն անգլիացիներ ապրում են այնպիսի պայմաններում, որը շատ մոտ է աղքատությանը։

ԱՄՆ-ում վերջին 9 տարում հետնախորշերի թիվն ավելացել է 20—30 տոկոսով։ Ամերիկյան պրոֆմիությունների ֆեդերացիայի տվյալներով ներկայումս երկրում հարկավոր է անմիջապես բնակության համար 15 միլիոն հին տները փոխարինել նորերով։

Թույլ զարգացած երկրներում յուրաքանչյուր բնակչի հաշվով տարեկան եկամուտը մոտ 10 անգամ քիչ է, քան արդյունաբերական տեսակետից զարգացած երկրներում։

Կապիտալիստական «ազատ» աշխարհում ապրող ազգային փոքրամասնությունները ենթարկվում են ամենադաժան ռասսայական հալածանքների։

Սարսափելի ծանր վիճակումն են գտնվում ԱՄՆ-ում բնակվող 400.000 հնդիկները, որոնց մոտ գործազրկությունը 10 անգամ ավելի բարձր է, քան երկրի մնացած բնակչության մեջ։

Նյու-Մեկսիկո նահանգում ապրող 13.711 չափահաս հնդիկներից աշխատանք ունեն միայն 3.212 մարդ։

Միսիսիպիի, նահանգի հարավում ապրող հնդիկների 86,1 տոկոսը գործազուրկ են։





## ՍՏՈՐԳԵՏՆՅԱ ԵՌԱՑՈՂ ԾՈՎ

Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի գեոֆիզիկները կատարել են հետաքրքիր հայտնագործություն։ Նրանք հայտնաբերել են յուրատեսակ հանքանյութ՝ տաք, եռացող ջրեր երկրի ընդերքում։ Այդ ջրերը բռնում են Հունգարիայի ամբողջ տերիտորիայի երկու երրորդը։ Երկրի մակերևույթից մեկից մինչև երեք կիլոմետր խորության վրա փռված է այդ յուրօրինակ եռացող ծովը, մոտ հինգ կվադրիլիոն խորանարդ մետր ջրի պաշարով։ Ջրի միջին ջերմությունը 100 աստիճան է։ Դա ջերմային էներգիայի հսկայական պաշար է, որի խելացի օգտագործման հարցով զբաղված են Հունգարիայի գիտնականները։

Ստորգետնյա ծովը իր մեջ պարունակում է մի քանի անգամ ավելի շատ ջերմային էներգիա, քան երկրում եղած հանքային վառելանյութերի ջերմային էներգիան է (քարածուխ, նավթ, գազ, տորֆ)։ Դրա համար էլ Սեգեդայի մոտ կառուցվում է փորձնական գեոթերմիկ հարմարանք, որի միջոցով կմշակվեն և կուսումնասիրվեն ստորգետնյա տաք ջրերը ամենալավագույն ձևով օգտագործելու միջոցներ։ Գիտնականները հույս ունեն, որ իրենց կհաջողվի եռացող ծովի ջերմության օգտագործմամբ ծածկել երկրի վառելանյութի պահանջի մեկ չորրորդ մասը։

## ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹ ՎՆԱՍԱՏՈՒՆԵՐԻՑ

ԱՄՆ-ի բամբակի պլանտացիաներին մեծ վնաս են հասցնում երկարակնճիթները, որոնք չորացնում են բամբակենին։ Նրանք ձու են դնում բամբակի բողբոջի մեջ, որոնք դառնալով թրթուրներ՝ ուտում են կոկոնները։ Ինսեկտիցիդներով սրսկումները օգուտ չեն տալիս և ստիպված չորացած կոկոնները հավաքում են ձեռքով։

Այժմ Միսիսիպիի նահանգի համալսարանի և գյուղատնտեսական փորձակայանի համատեղ ուժերով ստեղծված է մի մեքենա, որն անցնելով շարքերի միջով բույսի չորացած-ընկած մասերի հետ ներս է քաշում նաև վնասատու թրթուրները և մանրացնում դրանք՝ դարձնելով մածուկ, որը անմիջապես թափում է բամբակենու արմատի մոտ։ Այդ մածուկը ծառայում է որպես շատ լավ պարարտանյութ։

## ԱԹԵԻՍՏԱԿԱՆ ԱՍՈՒՅԹՆԵՐ

*Եթե հավաքենք կրոնական պատերազմների հետևանքով այրված բոլոր քաղաքների ու գյուղերի մոխիրը, ապա կկազմի մի այնպիսի սար, ինչպիսին Եվրոպայի ամենաբարձր սարն է՝ Մոմբլանը։*

Ջ. ՍՎԻՖՏ

*Կրոնները, ինչպես նաև վանքերում եղած արձանները, ժամանակի ընթացքում կմահանան։*

Դ. ԴԻԴՐՈ

*Բոլոր կրոնները միատեսակ են... Աստծու ստեղծումը մարդու տգիտության աստվածացման հետևանք է միայն։*

Կ. ՀԵԼՎԵՑԻՈՒՍ

*Ներել աստծուն կարող է նա միայն, ով գոյություն չունի։*

Ա. ՍՏԵՆԴԱԼ

*Ոչ մի ժողովրդի մոտ անմահության նկատմամբ հավատը այնքան ուժեղ չի եղել, ինչպես կելտերի մոտ, նրանցից կարելի էր փող վերաունել, պայմանով, որ այն վերադարձվեր հանդերձյալ կյանքում։*

Հ. ՀԱՅՆԵ

*Քրիստոնեական կրոնը ծաղր ու ծանակի ենթարկելու համար տերտերները ավելի վատ բան չէին կարող անել, քան... սրբերի առջև խոնարհվելը, քանզի այդ սրբերի ճնշող մեծամասնությունը, պատմության համաձայն, հանդիսացել են հասարակության տականքը, անպիտան մարդիկ։*

Օ. ԿՈՐՈՎԻՆ

*Անկասկած, քրիստոնեությունը երկրի վրա գոյություն է ունենալու նաև հազար տարի անց, սակայն որպես թանգարանային խրտվիլակ։*

ՄԱՐԿ ՏՎԵՆ

*Երբ կարդում ես Աստվածաշունչը, ավելի շատ ես զարմանում աստծու անիրազեկության, քան նրա ամենագիտության վրա։*

ՄԱՐԿ ՏՎԵՆ



## ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

### 1. ՍՄԿՊ-ի պայքարը միջազգային կոմունիստական շարժման միասնության համար

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Ճառ, արտասանած Սովետական Միության և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ժողովուրդների բարեկամության միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 13-ի համարում։*

Վ. ՈՒԼԲՐԻԽՏ— Ճառ, արտասանած Սովետական Միության և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ժողովուրդների բարեկամության միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 13-ի համարում։*

Սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների բնույթի մասին, *հոդվածների շարադրանք տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 20-ի համարում։*

### 2. Հանուն խաղաղ գոյակցության, հանուն ժողովուրդների բարեկամության

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—* Ելույթ Դանիայի Դալումի գյուղատնտեսական դպրոցում 1964 թվականի հունիսի 18-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 20-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—* Ճառ. արտասանած Շվեդիայի Գյոտեբորգ քաղաքում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 25-ի համարում։*

Ինֆորմացիոն նյութեր Ն. Ս. Խրուշչովի Սկանդինավյան երկրներ այցելելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 16—30-ի և հուլիսի 1—5-ի համարներում։*

### 3. Ցանքերի լավ խնամքը բարձր բերքի կարևորագույն պայմանն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Բարձր բերք անեցնելու վճռական օրերը, *«Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 19-ի առաջնորդողը։*

Հերբիցիդներն ու հանքային պարարտանյութերը օգտագործենք համատեղ, հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 11-ի համարում:

Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ— Քիմիական մեթոդի նշանակությունը վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարի գործում, հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1964 թվականի 5-րդ համարում:

## 4. Կազմակերպված անցկացնենք անասունների ամառային խնամքը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հաջողությամբ անցկացնել հանրային հոտի ամառային արոտը, «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 6-ի առաջնորդողը:

Գ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ— Օրինակելիորեն կազմակերպել անասունների ամառային արոտը, հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1964 թվականի 5-րդ համարում:

Ս. ՄԵԼՔՈՆՅԱՆ— Էժան, բարձրորակ միս արտադրելու հուսալի միջոց, հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1964 թվականի 5-րդ համարում:

## 5. Շինարարության առաջադրանքները կատարել ժամանակին և որակով

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կառույցների եռուն շրջանը, «Պրավդայի» առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 20-ի համարում:

Համաժողովրդական ուշադրություն դպրոցաշինարարությանը, «Պրավդայի» առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 27-ի համարում:

Ա. ԱՎԱԳՅԱՆ— Խելացիորեն օգտագործել շինարարության արժեքի իջեցման ռեզերվները, հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 26-ի համարում:

Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Կառույցների հզոր թևերը, հոդված, տպագրված «Երեկոյան Երևան»-ի, 1964 թվականի հունիսի 26-ի համարում:

Բոլոր ուժերը կիսամյա պլանի կատարմանը, նյութեր, տպագրված «Երեկոյան Երևան»-ի 1964 թվականի հունիսի 13-ի և 20-ի համարներում:

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Սկանդինավյան պատմվածքներ, 196 էջ, տպաքանակ 5000, գինը 20 կոպ.:

Այս ժողովածուն ամփոփում է Սկանդինավյան երկրների՝ Դանիայի, Իսլանդիայի, Նորվեգիայի և Շվեդիայի գրողների պատմվածքները, որոնք բացահայտում են այդ երկրների գրականության բնորոշ գծերը, նրա խոր թափանցումը մարդկային հոգեբանության ու բնավորության մեջ, ցույց տալիս հյուսիսի ժողովուրդների ազգային առանձնահատկությունները, ծանոթացնում այն պայքարին, որ Դանիայում ու Շվեդիայում մղվում էր ֆաշիզմի դեմ՝ գերմանական օկուպացիայի տարիներին:

Գրքում զետեղված պատմվածքները, որոնք առաջին անգամ են ներկայացվում հայերեն, կընդլայնեն սկանդինավյան ժողովուրդների մասին հայ ընթերցողի գիտելիքներն ու պատկերացումները:

Լ. Լ. ՎԱՍԻԼԵՎ, Մարդու հոգեկանի խորհրդավոր երևույթները, 209 էջ, տպաքանակ 5000, գինը 17 կոպ.:

Բժշկական գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Լ. Լ. Վասիլևի գիրքը նվիրված է նյարդային-հոգեկան բնույթի մի շարք «խորհրդավոր» երևույթների նախ, քաղքենիական ըմբռնմամբ առաջացած սնոտիապաշտությունների մերկացմանը: Քունը և արտասովոր երազները, հիպնոսը և ինքնաներշնչումը, «մտքերը կարդալը» և նրանց հաղորդումը հեռավորության վրա, ինչպես նաև մահը և կենդանիներին ու մարդկանց վերակենդանացնելու փորձերը— այս բոլորի մասին պատմվում է գրավիչ ձևով, բերվում են բազմաթիվ հետաքրքիր օրինակներ: Այս գիրքն էջ առ էջ խոսում է մատերիալիստական աշխարհայացքով զինված իսկական գիտության մեծ ուժի մասին, գիտություն, որը սնահավատությունների ու կրոնի դեմ մղվող պայքարում քայլ առ քայլ խորացնում է մեր գիտելիքները մարդու հոգեկանի բնույթի մասին:

Բ. ՍՄԱԳԻՆ, Ատոմն աշխատում է, 111 էջ, տպաքանակ 10.000, գինը 26 կոպ.:

Գրքում հեղինակը պատմում է, թե ինչպես մարդիկ իմացան ատոմի միջուկում թաքնված էներգիայի վիթխարի պաշարների մասին, ինչպես նրանք սովորեցին օգտագործել այդ էներգիան, ինչպիսի հատկություններ ունի միջուկային վառելանյութը և ինչպիսիք են նրա պաշարները երկրի վրա:

Ընթերցողը կիմանա, թե ինչպես է կառուցված ատոմային էլեկտրակայանը, ինչպիսի հսկայական գործեր են կատարում փոքրիկ ատոմներն այժմ, երբ մենք դեռ միայն նոր ենք սկսում օգտագործել դրանց մեջ թաքնված էներգիայի պաշարները:

Այն մասին, թե ինչպիսին կլինի ատոմային տեխնիկայի վաղվա օրը, խոսվում է գրքի եզրափակիչ մասում:

ԻՆԴԵՔՍ՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 13

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*ՎՖ 07233* *Պատվեր 529* *Տիրաժ 9.010*

*Հանձնված է արտադրության 23/VI 1964 թ.։*
*Ստորագրված է տպագրության 2/VII 1964 թ.։*

*ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,*

*Երևան, Կնունյանցի № 8։*

Գինը 8 կոպ.։